# ԸՆՏԻՐ

# ՄԱՏԵՆԱԳԻՐՔ

---

# Ե Զ Ն Ի Կ

# ԵԶՆԿԱՅ

## ԿՈՂԲԱՑՒՈՅ

### ԲԱԳՐԵՒԱՆԴԱՅ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

# ԵՂԾ

## ԱՂԱՆԴՈՑ



Ի ՎԵՆԵՏԻԿ

Ի ՍՈՒՐԲՆ ՂԱԶԱՐ

ՌՄՀԵ.

# ԶԵԿՈՒՑՈՒՄՆ

Զթողացուցանէ չափ մատենիս աւելի քան զկատարեւորացս ազդումն կանխաբանել :

Օրինակ տպագրիս ձեռագրեալ է 'ի Թուին Հայոց ՉԻԹ․ յոր յանխորշելի վրիպակաց տառիցն՝ որ ինչ․ ուրեք յայտնի գուշակերն՝ ուղղեալ, զկատարեւորսն՝ որպէս էր յօրինակին՝ աստղանիշ ներքոյ դրոշմեցաք․ և զանյօդուտս զմիահետ գրչագիրն տարարաք 'ի գիրս և 'ի գլուխս :

Յաւելուածն յետոյ մատենիս, Եզնրկայ Վարդապետի Խրատք, 'ի ձեռս հարանց՝ Նեղոսի սուրբ հօրն ընծայի․ այլ սա չէք 'ի յոյն բնագրին, Թէպէտ և մատենագրութիւնք իսկ նորա ոչ ամենայնն անկորուստ կան :

# ԵԶՆԿԱՅ

## ՎԱՐԴԱՊԵՏԻ

## ԿՈՂԲԱՑԻՈՅ



## ԳԻՐՔ ԱՌԱՋԻՆ

# ԵՂԾ

## ԱՂԱՆԴՈՑ ՀԵԹԱՆՈՍԱՑ

Ա. ՅՈՐԺԱՄ զանեղութենէն և զնորին զմշտնջենաւոր զօրութենէն ճառիցէ ոք, քանզի մարմնաւոր լեալ է, պարտի զմիտս յստակել և զխորհուրդս սրբել, յայլոց շարժմանց պարզել, զի յայն զոր առաջի եդ՝ հասանել կարասցէ։ Նա և որ ընդ ճառագայթս արեգականն հայել կամիցի, պարտի ըդ

պղտորութիւն աչացն՝ զաղօտն և ըղձ-
ալիժն 'ի բաց սպրդել, զի մի՛ մթար-
քըն՝ որ զբթօքն շողայցեն, արգել-
հայելոյ 'ի յստակութիւն լուսոյն
լեցին ։

Եւ արդ քանզի մի էութիւնն
անքնին է և անհաս բնութեամբ,
առ նորա անքննութիւնն ընծայու-
թիւն անգիտութեան մատուցանե-
լի է, և առ էութիւն նորին դա-
ւանութիւն գիտութեան և ոչ
քննութեան ։ Զի որ էն՝ պարտի
զի մշտնջենաւոր իցէ և անսկիզբն,
որոյ ոչ սկիզբն յումեքէ առեալ ըն-
նելոյ, և ոչ ունի զոք 'ի վեր քան
զինքն, զոր պարտ իցէ նմա պատ-
ճառ կարծել կամ իմանալ՝ եթէ
'ի նմանէ իցէ առեալ սկիզբն էա-
նալոյ ։ Զի ոչ ոք է առաջին քան
զնա, և ոչ ոք է յետոյ նման նմա,
և ոչ ընկեր հաւասար նորին, և ոչ
էութիւն հակառակ նմա, և ոչ
գոյութիւն ընդդիմակաց, և ոչ
բնութիւն հիւթաքեր 'ի պէտս նո-
րա, և ոչ նիւթ ինչ՝ յորմէ առնի-
ցէ զոր առնելոց իցէ. այլ ինքն է

պատճառ ամենայնի, որ 'ի լինելն
և 'ի դոյանալ եկեն 'ի չգոյէ և 'ի
գոյէ. որպէս երկինք վերինք և որ
ինչ յերկինս. և երկինք երևելիք
որ 'ի ջուրց. և երկիր, և ամենայն 'ի
նմանէ և 'ի նմա. յորմէ ամենայն,
և ինքն ոչ յումեքէ: Որոյ բառ իւ-
րաքանչիւր կարգաց տուեալ է ըստ
կոչման լինելոյ աներևութից ան-
մարմնոց, և երևելեացն մարմնա-
ւորաց. որ բաւականն է որպէս 'ի
տալն զգիտնականութիւնն, նոյնպէս
և 'ի դիտութիւն իւրոյ անպարար է-
ութեանն ժամանեցուցանել, և
մերոց արարածոցն 'ի հաստատուն
ըստ իւրաքանչիւր բնութեանց ա-
ծել: Որ ոչ այնու միայն զարմանա-
լի է, զի ածն 'ի չգոյէ 'ի գոյ զչ-
գոյսն, և եցոյց յոչնչէ յինչ զչէսն,
այլ զի և անպատառ և անխախտու-
պահէ զբնաւսն. որոց և յառաջ-
նումն իսկ աննախանձ եւս զգիտնակա-
նութիւնն. առ 'ի յայտնելոյ զիւ-
րոյ զարարչագործութեանն հանգէս:
Քանզի ոչ եթէ կարօտ ինչ ոք
իւիք էր, եթէ վասն այնորիկ խնայ-

ելցէ՝ իւր միայնոյ սեպհականեալ ըն-
կենդանութիւնն. և անզօր և ան-
կար, եթէ զանձին եւեթ խորհեսցէ
զզօրութիւնն: Եւ ոչ նուազ 'ի գի-
տութենէ, եթէ ինքեան եւեթ պա-
հեսցէ զգիտութիւնն. և ոչ կարօտ
յիմաստութենէ, եթէ յորժամ այ-
լոց բաշխեսցէ զիմաստութիւնն իւր,
կարծիք ինչ կարօտութեան 'ի ներ-
քս մտանիցեն: Այլ կենդանի է
և աղբիւր կենդանութեան. այս
ամենայնի կենդանութիւն, և ինքն
կայ լի և յանսպառ կենդանու-
թեան. և զօրացուցանէ զանզօրս
մեծազօր զօրութեամբ, և ինքն ոչ
թերանայ 'ի զօրացուցիչ զօրութե-
նէն. և պարգևէ գիտութիւն ա-
մենայն անգիտաց, և ինքն բաւա-
կան ունի յինքեան զամենագէտ
գիտութիւնն. և բղխէ յամենեսին
զանսպառ իմաստութիւնն, և ին-
քըն միայն անխափան յամենա-
հնար իմաստութեանն:

Եթէ աղբերք մշտաբուղխք, որք
'ի նորա հրամանէ կարգեցան, հա-
նապազ բղխեն և ոչ պակասեն,

մարդոց բաղխմունքն զայլոց կարօտութիւնս լնուն , և խնդրանք 'ի նմին յօդուածութեան կան միջամտչենաւորք , ծիրչափ եւս առաւել այն՝ որ նոցա զյօդուածութիւն բաղխմանցն յօրինեաց , որ առաջինն է բարոյութեան . որ զամենայն զոր արար գեղեցկին արարչ , այս ինքն զբանաւորս և զանբանաւորս , զմարմնաւորս և զանմարմնաւորս , զխօսունս և զանխօսունս , զասունս և զանասունս : Եւ բանաւորաց և մարմնաւորաց յիւրաքանչիւր առաջինութեանց կարգեաց սահման զբարութիւն , և ոչ զգեղեցկութիւն . զի գեղեցկութեանն առաւել ինչ ինքն է , և բարութեանն՝ զանձնիշխանութիւնն արար պատճառ :

Բ. ԱՊԱ եթէ ինչ յարարածոց՝ որ գեղեցիկ է՝ այն 'ի բարւոյ արարչէ կարծիցի ոմանց , որպէս Յունացն հեթանոսաց և այլոցն մոլորաց և հերձուածողաց , որ չար իմն էութիւն համարեալ բարւոյ դնեն , զոր հիւղն կոչեն՝ որ թարգմանի նիւթ , մեր առաջինն և նա [illegible] պատասխանատուանիմք այն է՝

եթէ 'ի բարերար արարչէն չար ինչ
չէր լեալ. և չէր ինչ չար որ ընդու-
թեամբ չար իցէ. և ոչ է արարիչ
չարաց իրաց, այլ բարեաց:

Եւ արդ զո՞ր ինչ յարարածոցն
բարի կարծիցեն, կամ զո՞ր չար. զի
բազում անգամ զոր բարին կարծի-
ցեն, միայն առանձինն՝ առանց ըն-
կերին խառնութեան՝ մնասակար
լինի, յամենեցունց առ հասարակ
մկայեալ: Արեգակն թէ բարի է,
և առանց օդոյ խառնուածոյ այրէ
և ցամաքեցուցիչ է. Նոյնպէս և
լուսին խոնաւական բնութիւն, ա-
ռանց խառնուածոյ ջերմութեան
արեգական, մնասակար և ապա-
կանիչ է: Եւ օդ, առանց ցօղոյ խա-
ռնութեան և ջերմութեան, մնա-
սակար և ապականիչ է. և ջուրք
զհող երկրի ողողանեն և ապակա-
նեն. և երկիր առանց ջուրց պա-
տառի և խորխալի: Եւ այսպէս
չորեքին բնութիւնքն, ուստի աշ-
խարհս կազմեալ և կայ, առան-
ձինն՝ ապականիչք են միմեանց,
և խառնեալ ընդ ընկերին՝ օգտա-

կարգք և շահաւորք։ Եւ զիարդ այս այսպ-
էս է, ամենեցուն յայտնի է՝ որ
կամին ուսանել։

Այսու ուրեմն է լինել զօրութիւն ծածուկ, որ զապականականչեան մի-մեանց խառնուածովք արտաքս օտ-տականս իրերաց։ Եւ որ առաւել միտս ունին, ոչ զշարժուածն՝ այլ զշարժիչն պատուաւորին փառաւորել. և ոչ ընդ արքանեկական, այլ ընդ վարիչն պատուաւորին զարմանալ. և ոչ ընդ գնայունան, այլ ընդ գնացուցիչն. քանզի և նորին իսկ իւրաքանչիւր փոփոխմանցն յայտ առնեն, եթէ է ոմն՝ որ փոփոխէ զնոսա։ Արեգականն ծագելովն և մերանալով և 'ի մուտս դառնալով. և լուսնին աճմամբ լնլով և նուազելով. և այլք ևս յարարածոցն ըստ իւրաքանչիւր բնութեանց շարժելովն և դադարելովն։ Իսկ արդ չէ առաւել մտաց՝ զշարժիչն և զփոփոխիչն թողուլ, և շարժմանցն և փոփոխմանց պաշտօն մատնել և երկրպագութիւն մատուցանել. զի որ շարժին և փոփոխին՝ չէ էական.

այլ կամ՛ լեալ յուսմքէ և յիմքէ, և կամ հաստատեալ ՚ի չգոյէ: Եւ որ էն և շնորհէ զամենայն, ինքն ոչ շարժի և ոչ փոփոխի. քանզի էական է և անշարժական է:

Գ. ԵՒ զի մի էութիւն միշտընջենաւորական է և պատճառ ամենեցուն լինելոյ, այնմ՝ և որ ըստ բազմատարածեան պաշտամունսն մուծին՝ վկայեն, և պատճառեն այսպէս: Մեք, ասեն, քանզի չեմք բաւական մերձենալ յամենեցունց պատճառն, յէն ՚ի Գոյն ՚ի միշտընջենաւորն և յանմատոյցն, վասն այնորիկ այլովքն խոնարհագունիւք նմա պաշտօն մատուցանեմք. և որովք նմա զպաշտօնն մատուցանեմք, հարկ է և զնոսա ողոքել զոհիւք և նուէրօք:

Եթէ որպէս վկայենն՝ մի է պատճառ ամենեցուն, և նոյն էական և միշտընջենաւոր, յայտ է թէ այլքն ոչ էականք են և ոչ միշտընջենաւորք. և զիարդ չէականքն և չմիշտընջենաւորք ընդ էականին և ընդ միշտընջենաւորին երկրպագութիւն առնու-

ցուն ։ Եւ մանաւանդ մարմնաւորք և երեւելիք, որպէս արեգակն և լուսինք և աստեղք և հուր և ջուր և երկիր, որ՚ի մտաց և՚ի հեթանոսաց պաշտին ։

Ապա եթէ ասիցէ ոք յայնպէսեացն . Բարւոք է, զի մի էութիւն աստուածային ասէք . արդ եթէ մի էութիւն է՝ որ զամենայն յամենայնի ազդեցուցանէ, և չիք ինչ նմա հակառակ, մեզ զերախտաւորն և զբարերարն՝ որ՚ի նմանէ կարգեալ են՝ զիա՞րդ հրամայէք անարգել ։

Ասասցուք, եթէ զերախտաւորն և զբարերարս՝ որ՚ի նմանէ կարգեցան՝ մեք ոչ հրամայեմք անարգել . բայց դարձեալ և ոչ ըստ պաշտօն արարչին՝ արարածոցն մատուցանել . զի չիք ոք բարերար և երախտաւոր, բայց միայն որ արար և ոչ խնայեաց . և պահէ կենդանի զբանաւորսն աներեւոյթս, և ոչ նախանձի . զհրեշտակաց ասեմ և զհոգւոց մարդկան, և զգայականացն անշնչից յիւրաքանչիւր կայանի ։

Արդ բարերարք է արեգականն և գե-
ղեցիկ բնութեանց, և մեզ և ամե-
նայն արարածոց՝ որ 'ի ներքոյ եր-
կնից՝ յօգուտ և 'ի զարդարանս, իբրեւ
ճրագ մի 'ի մեծի տան 'ի մէջ ձե-
ղուան և յատակի լուցեալ՝ առ 'ի
զխաւարն և զստուերն զերկուց մե-
ծացն անօթոց 'ի բաց 'ի միջոյ փա-
րատելոյ. բայց ինքն եթէ իցէ և ե-
թէ չիցէ՝ զայն ոչ գիտէ, զի չէ 'ի
բանաւորաց և 'ի մտաւորաց. Նոյն-
պէս և այլքն յանշնչոց արարա-
ծոց: Եւ թէ ջուր թէ հուր թէ
երկիր թէ օդ, թէ իցեն և թէ չի-
ցեն՝ զայն ոչ գիտեն, և զսպասա-
ւորութիւնն՝ յոր կարգեցան՝ ան-
դադար մատուցանեն, վարելով
այնոր՝ որ կազմեացն զնոսա: Եւ
մեք ոչ անարգեմք զնոսա, և ոչ
պաշտօն մատուցանեմք նոցա. այլ
հայեցեալ ընդ նոսա՝ փառաւորեմք
զկարգիչն նոցա և զյօրինիչ, զի
մեզ 'ի պէտս են, և կարգչին իւ-
րեանց 'ի փառս:

Զխառն պաշտօնիցեմք զարեգակն,
որ մերթ կոչի իբրև զծառայ առ

'ի սպասն՝ յոր կարգեցաւ՝ հաստա-
նելոյ, և մերթ երթայ զօղէ խղճիւ
զարհուրեալ, և առայ տեղի խաւա-
րին ընդուլ զմիջոց 'ի մեծի տանս.
և ընդ ժամանակս ժամանակս 'ի
խաւարի զտանալոյ՝ առ 'ի յանդգնու-
թիւն և յամօթ իւրոցն պաշտօ-
նէից. յայս արարեալ եթէ չեմ ես
արժանի պաշտաման; այլ այն՝ որ
զիս և զամենայն տես լուսաւոր
պահէ, և զգայր զօղեցուցանէ. և
երբեք երբեք խաւարեցուցանէ՝ և
խղճիւ խօսուն ընդունօղ անշշունչն
քաղցրէ՝ եթէ չեմ արժանի պաշտօն
առնելոյ այլ պաշտօն հարկանելոյ։
Կամ զլուսինն՝ որ ամսոյ ամսոյ հիւ-
ծանի, զրե'լթէ և մեռանի, և ա-
պա սկիզբն առնու կենդանանալոյ,
զի քեզ զյարութեան օրինակն նկա-
րեսցէ։ Կամ զօդ՝ որ մերթ գոչեցէ
վարագուրեալ՝ հրամանաւ, և մերթ
տարածէ 'ի գոչելոյն՝ տատանիւ։ Եւ
կամ զհուր՝ որում և զքեզ իսկ
երկրորդ արարիչ կազմեաց յօրի-
նիչն, զի յորժամ կամիցիս՝ վառի-
ցես, և յորժամ կամիցիս՝ խափա-

ցանկիցես ։ Կամ զերկիրն՝ որ համբա-
ապառ բերեմք, և ցանկ կոխեմք, և
զաղբ զմեր և զանասնոց մերոց 'ի
նա հեղումք ։ Կամ զՋուրս՝ զոր հա-
նապազն ըմպեմք, և զանուշու-
թիւն նոցա 'ի ժանտահոտութիւն
'ի փոխել մերում դարձուցանեմք,
և զներքին և զարտաքին աղտեղու-
թիւնս մեր նոքօք սրբեմք ։

Եւ այսու ամենայնիւ յայտ է՝
թէ զոր առ աստուածն ունին,
անարգեն շատք և անպատուեն ։
Նա և զողորումն և սոսկումն ունի
զարմարածն, յորժամ զպատիւ ա-
րարչին ոք նոցա մատուցանիցէ ։ և
յայտ առնէ երկիր շարժելովն, և
լուսաւորքն խաւարելովն, և օդքն
գժգմելովն և քամմնելով, և ծով
սաստկութեամբ ալեացն ապա-
նալեօք ։ Զի թէ ոչ սոսա արարա-
չէին նահանջէր զնոսա, մի մի 'ի նո-
ցանէն բաւական էր զամենեսին
սատակել՝ առ 'ի խնդրելոյ զվրէժ
անարգանաց հաստատչաց արարա-
չին ։ Կամ ծով ծածկելով, որ
ակամ աւազովն պաշարեալ՝ չիշխէ

անցանել ըստ հրամանին ։ Կամ եւ կիր կլանելով, որ 'ի վերայ ոչընչի կայ հաստատեալ, եւ յոչինչ դառնալ եւ դարձուցանել չէ պատշաճ զիւր զբնակիչսն ։ Կամ հողմ պարտասեցուցանելով, որ կենդանութիւնն է ամենայն շնչաւորաց, եւ չիշխէ արգելուլ զկենդանութիւնն՝ առանց հրամանի կենդանապահին ։ Կամ օդք երկոքին զատուամանին շնչելով, եւ երկոքին զխորշակին բերելով. եւ լինէր ամենայն ինչ ոչ ինչ ։

Այլ նա առաւել երբեւ զկատարումն լծեալ 'ի չորից երիվարաց զաշխարհս տեսանեմք, 'ի ջերմութենէ 'ի ցրտութենէ 'ի ցամաքութենէ եւ 'ի խոնաւութենէ. եւ զօրութիւն իւր ծածուկ կառավար, որ զչորս կապեցուցանէ ընդ միմեանս 'ի հաշտութեան եւ 'ի հաւանութեան պահեալ նուաճէր ։ Ամենայն կառք 'ի համազգեաց երիվարաց լծին, բայց միայն այսոց կառաց՝ որ 'ի չհամազգեաց լծեալ են. եւ որ 'ի համազգեաց լծեալ են՝ երկոքին սայթաքին, երկոքին օձանեն եւ 'ի սաղ-

Նաւալի դիպուածովքն և զանձինս կա-
ցուցանեն. և երբեմն խորտակումն
խուկ կառացն գործեն. և յորժամ
ողջ կառաքն լցեն, և ողջ կառա-
վարն, և վարժ երիվարքն, ուշ և-
դեալ 'ի հանդէպ երեսացն եւեթ
արշաւին. և այս կառաք զարմանա-
լիք 'ի հակառակ և յաննման երի-
վարաց լծեալ և ծածուկ ձեռամբ
ուղղեալք, ոչ 'ի մի միայն կողմն 'ի
հանդէպ երեսացն եւեթ արշաւին,
այլ յամենայն կողմանս վարգին,
և ընդ հանուր արշաւին, և ընդ
քնաւս սլանան, և ամենայնի բաւա-
կան են։ Յորժամ ընդ առեւելս
ընթանան, չէ ինչ արգել՝ թէ ընդ
առեւմուտս ոչ արշաւեցին, և յոր-
ժամ ընդ հիւսիսի վարգին, չէ ինչ
արգել՝ թէ ընդ հարաւ ոչ սուրայ-
ցեն. զի ձեռն կառավարին բաւա-
կան է յամենայն կողմանս դիմե-
ցուցանել, և ընդ չորս անկիւնս
տիեզերաց արշաւեցուցանել։

Դ. ԴԱՐՁԵԱԼ առ այսպիսի
Ճշմարիտ աստուածս անպատշաճ
հարցուածս մատուցանեն. ուստի՞

իսկ ընտանի են , տանն , այդպիսի ան-
հարթութիւնք . զի թէ Աստուած
բարեաց արարիչ է և ոչ չարաց ի-
րաց , ուստի՞ է խաւար , ուստի՞ են
չարիք , ուստի՞ են աշխատութիւնք,
ուստի՞ են ըկանք՝ մերթ 'ի ցրտոյ
մերթ 'ի խորշակէ ։ Կամ ուստի՞ են
անզգամութիւնք , զի տեսանեմք
երկուս արս միազգիս ընդ միմեանս
զրգռեալ , միմեանց մահու և ա-
րեանն ծարաւի են ։ Եւ այլք զգե-
րեզմանս կործանեն, և զթաղեալ մար-
մինս ընդ հողովն մերկացեալ խայ-
տառակեալ՝ արեւու ցուցանեն .
և զմեծարեալ գլխն , առ փութի
չծածկելոյ , Թերեւս և շանց եւս
կեր արկանեն ։ Եւ է երբեք զի
մին փախուցեալ երթայցէ անձնա-
պուր ուրեք զկեանս անձինն շա-
հել , և միւսն ցասմամբ բորբոքեալ՝
արտաք զկնի ընթացեալ , ոչ դադարէ՝
մինչեւ յագեցուցանէ զցասումն .
ուստի՞ է այն անյագ ցասումն ։ Եւ
ամն մերկանայ զհանդերձս ընկե-
րին , և թէ ընդդէմ դառնայցէ
յարեւէ եւս արկանէ ։ Եւ ուրումն

'ի մտի եղեալ գողանալ զայլոց ա-
մուսնութիւն, և ելեալ անօրէ-
նութեամբ յօտար մահիճս, չտայ
լինել հայր որդւոց այնմ՝ որ օրինօքն
ամուսնացեալ իցէ ։ Եւ երբէք եր-
բէք պատերազմունք շարժին, ուր
մեղաւոր և արդար առ հասարակ
կոտորին, և մահք տարաժամք և
ախտք չարաչարք ։ Եւ զի՞ պիտոյ
է մեզ բնաւ մի ըստ միոջէ թուել,
այլ համառօտ իսկ ասել՝ թէ ու-
ստի՞ է այս ամենայն, և ո՞վ է սկիզբն
և գործիչ այնպիսի անպատեհից,
բայց եթէ իցէ ինչ չար զօրութիւն՝
որ զայն ամենայն անհարթութիւնս
տայցէ գործել, և ինքն իսկ արա-
րիչ իցէ նոցա. զի զԱստուած ա-
րարիչ ասել այնպիսի իրաց անպատ-
շաճ է. և ոչ 'ի նմանէ ունել զգոյ-
ութիւն չարեաց ։ Զիա՞րդ մարթ
է զայնպիսիսն յԱստուծոյ կար-
ծել. զի Աստուած բարերար է և
լաւութեանց արարիչ, և 'ի չարու-
թեանց ինչ 'ի նա ոչ մերձենայ, և
ոչ խնդալ ընդ այն ախորժէ, այլ
և խոտէ եւս զգործսն և զգործե-

լեա․ զի անընդունակի են չարիք 'ի բնութենէ նորա ։

Վասն որոյ կարծիք՝ թէ էր ինչ ընդ նմա, որում հիւղն անուն էր՝ որ է նիւթ, ուստի զամենայն արարածս արար և զատոյց ամենարուեստն իմաստութեամբ, և զարդարեաց վայելչութեամբ․ և յայնժամ նիւթոյ պատրաստ է կարծել զչարիս, որ անձիրան և անկերպարան էր և խառն'ի խուռն օձանելով երթեւեկէր, և կարօտէր Աստուծոյ արուեստագիտութեանն ։ Եւ Աստուած ոչ եթող զնա հանապազ խառն'ի խուռն վարել, այլ եկն յառնել զարարածս, և 'ի յոռութեանցն նորա յազնուագոյնսն զատուցանել կամեցաւ ․ և այնչափ ինչ արար 'ի նմանէ՝ որչափ Աստուծոյ վայելչէր առնել արարածս ․ և որ ինչ մրրախառն էր 'ի նմանէ, և չէր պատշաճ արարչութեան, զայն եթող ․ և յայնմ մրրոյ են չարիք մարդկան ։

Ե․ ԳԱՏԱՍԽԱՆԻ․ արդարեւ խակ չարիքն որ լինին՝ 'ի տարրակու-

սի կացուցանեն զպատգամս, և բա-
զում արք աւագք վասն նորին խորհ-
դերս մեծամեծս արարին ։ Կեաք
անհակընդդիմակից լինէր ընդ Աստուծոյ
կամեցան զնել. և կեաք ըստ նմա-
նէ նուաթ լինէր, զոր հելզն անուա-
նեն, թէ 'ի նմանէ արար զարա-
րածս. և կեաք հրաժարեցին բնա-
'ի խնդրելոյ, որպէս թէ անմեկնելին
այնիմ խնդրոյ չէք պատասխանած ։
Բայց մեզ հարկ եղեւ 'ի սիրոյ բա-
րեկամաց, և յոչ ուղիղ հայելոյ
ընդդիմակացն, ըստ մերում ակա-
րութեան պատասխանել յԱստու-
ծոյ շնորհաւն, մտանել 'ի խնդիր ճա-
ռիցս. մանաւանդ զի յաւանցեալ
եւս վասն խոցեալք յուղղոց ուղիղն-
դրոց 'ի կամացն մտադիւրութեան.
ուսեալ և ըմպեցի նոցա զճշմարտութիւն
ուսանել, և մեզ ոչ 'ի զուր լինէր
զրաստս ծախել ։ Քանզի ոչ եթէ
անփորձութեամբ ինչ յաղթել ճա-
նաչե, այլ խրատուածք զճշմարտութիւն
ուսանել ։

Որով յայտ է թէ երկուց անու-
րացաց 'ի միասին չէ մարթ լինել ։

Զի ուր երկու որք 'ի միաբանին իցեն, հարկ է թէ իցէ ինչ՝ որ գտանիցէ 'ի միջի: Արդ զիա՞րդ համարիցիմ զԱստուած. իբրեւ 'ի տեղւոջ ինչ յամենայնի 'ի հիւղն ընկեալ, եթէ 'ի միում ինչ 'ի մասանց նորա: Եթէ զամենայն զԱստուած յամենայնի 'ի հիւղն ընկեալ ասիցեն, որչափ մեծ եւս ասիցեն զԱստուած, գտանի հիւղն մեծ քան զնա: Քանզի զի յորում իցէ որք, այն յորում են, քան զայն որ 'ի նմա են՝ մեծ գտանի, զի բաւական եղեւ ամանել բոլոր զնա. եւ եթէ 'ի մասն ինչ միայն 'ի նմանէ, եւ այնպէս բիւրապատիկ մեծ քան զնա հիւղն գտանի, զի սակաւ ինչ մասն նորա բաւական եղեւ ընդունել զամենայն զնա: Եւ եթէ ոչ 'ի նմա, եւ ոչ 'ի մասանց ինչ նորա, յայտ է՝ թէ այլ ինչ էր անճառապէս ընդ մէջ երկոցուն, մեծ քան զերկոսեան. եւ ոչ միայն երկու անսկզբնականք գտանին, այլ երեքք. Աստուած, եւ հիւղն, եւ անճառապէսն, եւ մանաւանդ մեծ եւս անճառապէսն քան զերկոսեան:

Իսկ եթէ էր երրեք հիւղն ան-
զարդ և անսարգ և անկերպարան ,
և զարդարեաց զնա Աստուած ,
քանզի 'ի յատուութեանցն նորա 'ի
լաւն դարձուցանել կամեցաւ , ա-
պա ուրեմն էր երբեմն՝ զի յան-
զարդս և յանսարգս և յանկերպա-
րանս էր Աստուած , և հարկ էր
թէ խորհել զհիւղն իսկ և նա խառն
'ի խառնն վարէր :

Եւ թէ յամենայն 'ի հիւղն՝ որ-
պէս ասեն՝ էր Աստուած , յոր-
ժամ զնա 'ի զարդ և 'ի յարդ և 'ի
կերպարանս ածէր , ինքն յո՛ մար-
թէր ամփոփել , զի չէր ուրեք մարթ
ամփոփելոյ : Մի՛ թէ և զի՞նքն ընդ
հիւղին 'ի զարդս 'ի յարդս և 'ի
կերպարանս ածէր , քանզի չգոյր
ուրեք տեղի ամփոփելոյ . որ յետ-
նոյ ամպարշտութեանն է :

Ապա թէ ասիցեն՝ թէ հիւղն 'ի
յԱստուած էր , լաւ նմին օրինա-
կի պարտ էր խնդրել՝ որպէս զամա-
նինչ * 'ի նմանէ , որպէս զանասունս

* զատաքէչ :

'ի մէջ օդոյ՝ որք 'ի Նմա էին և զաւուցեալք 'ի Նմանէ, թէ իբրեւ 'ի տեղւոջ՝ որպէս և ջուրք յերկրի ։

Եւ զհիւղեայն ասեն՝ թէ անճահ և անզարդ և անարգ և չար էր. եթէ ըստ Նոցա մտացն իցէ, ապա չարեաց տեղի էր Աստուած. զի անհեդեղքն և անզարդքն 'ի Նմա էին. որ անհնարին անօրէնութիւն է, կարծել զԱստուծոյ թէ երբեմն ապանջական չարեաց էր, և ապա արարիչ չարեաց. Նա և բաժանելի եւս՝ թէ 'ի Նմա իբրեւ 'ի տեղւոջ էր ։

Զ. ԱՐԴ հարկ է 'ի պատճառս չարեացն գալ, և ցուցանել՝ թէ ուստի՛ լինին չարիքն, և չէ պատճառ չարեաց Աստուած՝ այնու զի առ ընթեր Նմա զհիւղն դնեն ։

Եւ արդ զո՞ր հիւղ առ ձեռն դնիցեն Աստուծոյ. ո՞չ ապաքէն զայն՝ ուստի զաշխարհս արար. որ անկերպարանն և անզարդ և անարգ էր ։ Զի տեսանեմք զաշխարհս 'ի պէսպէս կերպարանս և 'ի զարդս և 'ի յարդս. ապա ուրեմն կերպարանաց և զարդուց և արդուց ա-

բարիչ է՝ Աստուած, և ոչ ընութեանց: Իսկ եթէ արարչի այն գործ է՝ զբնութիւնս առնել, և ոչ միայն արդս և զարդս և կերպարանս, յայտ է եթէ աւելորդ է կարծել՝ թէ 'ի նիւթոյ ինչ իմէքէ յընթերակացէ արար Աստուած զաշխարհս, այլ յոչընչէ և 'ի չգոյէ:

Նաեւ զմարդիկ տեսանեմք, զի 'ի չգոյէ առնեն ինչ. որպէս շինօղքդ ոչ 'ի քաղաքաց քաղաքս առնեն, և ոչ 'ի տաճարաց տաճարս: Նոքա քանզի ամենեւին յոչընչէ չկարեն ինչ առնել, քարինքն՝ զոր 'ի շինուածսըն յօրինեն՝ ոչ եւս քարինք կոչին, այլ կամ քաղաք կամ տաճար. զի ոչ եթէ բնութեան գործ է քաղաքս կամ տաճարս, այլ արուեստին է՝ որ 'ի բնութեանն: Եւ արուեստն ոչ եթէ յընթերակացէ ինչ իմէքէ՝ որ 'ի բնութիւնսն իցէ՝ առնու զարուեստագիտութիւնն, այլ 'ի դիպացն որ դիպին 'ի բնութեանցըն: Քանզի ոչ եթէ անձնաւոր ինչ յանձնաւորաց զարուեստն կարէ ցուցանել, այլ 'ի դիպացն որք

գիտելին. որպէս 'ի զարգանութենէ զարբլինն, և 'ի հիւանդութենէ հիւանդին։ Չի մարդ և յառաջագոյն քան զարուեստն է. բայց արուեստաւորն չէ՝ եթէ ոչ նախ մարդն իցէ. ուստի զարուեստն յոչընչէ 'ի մարդիկ պատրաստեալ հարկ է ասել։ Եւ եթէ առ մարդկան այսպէս, որչափ ևս առաւել պատշաճ իցէ զԱստուծոյ խմանալ՝ թէ ոչ միայն արգուց և զարդուց և կերպարանաց արարիչ է, այլ յոչընչէ առնել բնականն է բնութիւնս, և ոչ առ գասախ նիւթ՝ յորմէ Աստուած ընտրեաց զբարերն 'ի մի թեր, և զչարն մրրախառն 'ի միւս կողմն, ուստի ջանայ մրրախառնն զյստակն պղտորել։

Է. ՉԱՐԻՔՍ որ լինին ուստի՞ իցեն։

Հարցցուք և մեք. չարիքն որք լինին անձի՞նք ինչ իցեն, թէ արդասիք անձանց։

Ասեն. 'ի դէպ է կարծել՝ եթէ արդասիք անձանց։

Եւ հիւղն, զոր ասեն անարգաւոր և անկերպարան, զիա՞րդ

անարգասաւորն և անկերպարանն՝ յայլս կարէր արգելանս ծնուցանել, եթէ ոչ 'ի դիւպացն լինիցին չարիքն, և ոչ 'ի նմանէ։ Զի ապանութիւնն չէ անձն ինչ, և ոչ չնութիւնն անձն ինչ է, և ոչ դարձեալ այլքն մի քան միոջէ 'ի չարեացն. այլ որպէս 'ի դալրութենէն դալիր կոչի, և 'ի ճարտարութենէ ճարտար, և 'ի բժշկութենէ բժիշկ, և այն ոչ եթէ անձինք ինչ են, այլ յիրաց անտի անուան զանուանս, նոյնպէս և չարիքն 'ի դիւպացն անուան զանուանութիւն։

Արդ եթէ և զայլ ոք խմանայցեն դրդիչ և դրդուիչ՝ որ արկանիցէ 'ի միտս մարդկան զչարիսն, և նա 'ի գործոյն՝ զոր գործէ՝ անուանի զանուն չարութեան։ Բայց զայն պատրաստ է գիտել, թէ զոր գործէ ինչ ոք՝ ոչ ինքն նոյն է. որպէս բրուտն յորժամ անօթս գործիցէ՝ ոչ ինքն անօթ լինի, այլ գործիչ է անօթոցն, ուստի և զանուանութիւն արուեստին առնու. նոյնպէս և չարագործն 'ի չարն գործելոյ առնու-

զանունս չարութեանն՝ եթէ շուն իցէ և եթէ սպանող։ Այսպէս ուրեմն յիրաւի ասեն մարդիկ արարիչք չարեաց, զի ինքեանք են պատճառք առնելոյ և չառնելոյ։ Եւ զչարիսն ոչ պատահեալք անձինս անուանել, այլ արդարև անձանց և չար։

Իսկ եթէ 'ի նմին յանմտութեան կացցեն՝ թէ արդարև անարդ և անարգասաւոր էր հիւղն, և Աստուած ած զնա 'ի զարդ և 'ի կերպարանս և յարդարանս, ապա զԱստուած գտնեն պատճառս չարեացըն։ Լաւ էր լեալ՝ թէ նոյնպիսի կացեալ էր անհեթեթ և անարգասաւոր, քան զալ յարդարանն և 'ի կերպարանս, և լինել պատճառ չարեաց այլոց։ Քանզի զի՞նչ մարթի ոք լինել՝ որ իցէ թէ անկերպարան իցէ. նա և ասելն անկերպարան՝ զկերպարանացն յայտ առնէ։ Իսկ եթէ էր ինչ անձնաւոր և կերպարանաւոր, անկլոյդ է ասել արարիչ զԱստուած։

Այլ այնու, ասեն, զի յանարգութենէն և յանհեթեթութենէն

դարձոյց 'ի զօրս և 'ի կերպարանս յիրաւի կոչի արարիչ ։

Այդ այնմ նման է , յորժամ 'ի քարանց որք շինուածս անկցէ՝ պատուաստելոյն և յօրինելոյն միայն արարիչ է , և ոչ բնութեանն ։ Իսկ արդ յի՞նչ իւիք արդեօք արար Աստուած զամենկերպարանսն . 'ի բնէ՞ իւիք թէ 'ի յոչէ ։ Եթէ ասիցեն՝ եթէ 'ի լոյս , զչարիսն՝ որ լինին՝ պատրաստին խնդրել , թէ ուստի՞ լինին ։ Որովհետեւ արդարութիւն ոչ նոյնպիսի մնացին՝ որպէս և էինն , այլ զի 'ի լաւն դարձեալ՝ լաւքեւեւթ երեւեացին ։ Ապա եթէ 'ի յոչէ իւիք դարձան , խզխեսցե՞ն ասել՝ թէ չարեացն պատճառ Աստուած է , զի նա զայր գաւախսն 'ի լաւ անոյր դարձոյց ։

Այլ ասեն՝ թէ պյատակն 'ի մի կազմին ընթարեաց , ուստի զարարածսն արար , և զմրրախատնն և թող ։

Աստացուք . որպէս զի թէ կարող էր և զայն յատակել և զչարիսն 'ի միջոյ բառնալ , և ոչ կամեցաւ զայն 'ի միջոյ բառնալ , ապա

պատճառս չարեացն պարտ է զնա տանել. զի 'ի կիսոյն նորա արար բարի արարուածս, և զկէսն նորա եթող նոյնակախս` յապականութիւն լինելոյ բարւոք արարածոցն : Եւ եթէ ճշմարտիւ ոք քննիցէ զիրսն` գտանէ յանհնարին վտանգս եկեալ զհիւղն քան զաստուծին անկարողութիւնն, զի նախ քան զընտրելն և զզգալն զվտանգսն չարեաց` յապահովք և յանհոգութեան կայր. և արդ յառնելոյ զազդմունս չարեացն` 'ի տագնապի և 'ի տարակուսի կայ: Եւ թէ կամիս` 'ի մարդոյ իսկ առօրինակ. զի նախ քան զպատկերանալն և լինել կենդանի, անմասն էր 'ի չարեաց. և յորժամ գայ 'ի չափ հասակի մարդոյ, յայնժամ միտ 'ի չարիս յիւրմէ անձնիշխանութենէ : Նոյնպէս և 'ի բարերարութենէն, զոր ասեն յԱստուծոյ եղեալ հիւղեայն, գտանի` զի 'ի յոռութիւնս եկն :

Ապա եթէ 'ի չկարելոյ Աստուծոյ բառնալ զչարիսն` եթող նոյնպիսիս, այնու տկարութիւն ածեն

զԱստուածով՝ կամ թէ բնութեամբ ունար իցէ, կամ թէ առ երկիւղի յաղթեցաւ յայլմէ զօրագունէ քան զինս ։ Եթէ յաղթեալ կայ կածանօք 'ի մեծագունէ քան զինս առիցեն, հարկ է թէ զչարիսն բըռնադատիչս կամաց նորա գնեն ։ Եւ ընդէ՞ր ըստ նոցա բանիցն չարիքն ոչ լինէին աստուածք, որ Աստուծոյն յաղթել կարէին ։

Ը. ԴԱՄՁԵԱԼ հարցցուք ըղհիւղայն. պա՞րզ ինչ բնութիւն իցէ, եթէ յօդուածով. զի ազգի ազգի գործուածք իրացն յայսպիսի քննութիւնս ածեն զմեզ ։ Զի եթէ պարզ բնութիւն էր հիւղն, և մենակերպ, և աշխարհս 'ի յօդուածոց և 'ի պէսպէս բնութեանց և 'ի խառնուածոց հաստատեալ է, անհնարին է ասել՝ եթէ հիւղեայն լեալ իցէ ։ Վասն զի չէ մարթ յօդուածոյիցն 'ի միոջէ պարզ բնութենէ ունել զհաստատութիւնս. քանզի յօդուածոյքն 'ի պարզական բնութեանցն յօդին ։

Եւ եթէ 'ի պարզական բնու-

Թեանցն յօդեցաւ, այսպէս էր ժա-
մանակն՝ յորժամ հիւղն խակ չէր 'ի
մէջի, զի 'ի պատրաստականացն յօդե-
լոյ եղեւ հիւղն. ուստի լեալ խակ
երեւի հիւղն, և ոչ անարար: Զի
եթէ յօդուածով էր հիւղն, և յօ-
դուածոյքն 'ի պատրաստականացն ու-
նէին զանձնաւորութիւն, այսպէս էր
երբեք՝ զի չէր խակ հիւղն, մինչ չեւ
պատրաստականացն 'ի միմեանս յարեալ
էր. և եթէ էր ժամանակ՝ յորժամ
զի հիւղն չէր, ապա չգոյր ժամա-
նակ յորում չէր անարար: Զի
եթէ Աստուած անարար էր, և
պատրաստականքն եւս անարարք ուստի
հիւղն յօդեցաւ, յայտ է թէ չէին
երկոքեան միայն անարարք, այլ հինգ:
Եւ արդ ասեսցուք, համամի՞տք ինչ
ընդ մի՛միմեանս էին բնութիւնքն,
ուստի հիւղն յօդեցաւ, թէ հա-
կառակք երկերաց. Նա առաւելն ան-
ասնեմք զընտութիւնն միմեանց հա-
կառակս. քանզի ընդդիմամարտ է
հրոյ ջուր, և լուսոյ խաւար, և
ցրտոյ ջերմ, և ցամաքի խոնաւ:
Եւ ինքն՝ման ինչ հակառակ և զիա-

տկար չէ , բայց ընկերին . և ան-
տի յայտ է՝ թէ չեն 'ի միոջէ նիւ-
թոյ , և ոչ մի նիւթն 'ի չորից հա-
կառակորդաց ։ Արդ եթէ մինչ էր
նիւթն՝ ոչ եթէ ինքեան հակառակ
էր , այլ ընկերին . որպէս սպիտակ
թխոյ , և քաղցր դառին ։

Թ. Եւ արդ զհիւլեայն խնդիր
թողեալ՝ զոր նիւթն ամենայնի կո-
չեն , 'ի չարեացն խնդիր եկեսցուք՝
զոր 'ի նմանէն խմանեան ։ Զի յոր-
ժամ չարիքն յայս լինիցին՝ թէ չեն
անձնաւորք , անտի և հիւղն յան-
դիմանի՝ թէ ոչ էր երբէք , և ոչ
գոյութիւն անձնաւոր ։

Արդ զմարդկան իսկ չարեաց
հարցցուք . արգասիք անձանց ի-
ցեն , և եթէ անձինք ինչ չարիքն .
զի որ ինչ 'ի մարմինս և 'ի հոգիս
շարժմունք խաղան , ոչ մարթի ա-
սել՝ թէ այն մարդ իցէ , այլ կամա-
կան շարժմունք . զի մարդն անձ-
նաւոր է , և բարքն չանձնաւորք ,
որպէս սպանութիւն կամ շնու-
թիւն՝ որ 'ի բարուցն գործիցին ։

Արդ եթէ այնք՝ արարածք ինչ

անձնաւորք իցեն, հարկ է և ըղ-
պատճառն որ զնեն՝ արարած
անձնաւոր կարծել. զի որոյ մասն
ինչ արարած է, յայտ է եթէ նա
ամենեւին իսկ արարած է. և որոյ
մասնն չէ արարած, նա բնաւ իսկ
չէ արարած: Այլա ուրեմն էր եր-
բեք՝ զի բնաւ չէր ամենեւին ինչ
արարիչ բովանդակ, մինչ չեւ Աս-
տուծոյ զմարդն արարեալ էր, ուս-
տի չարիքն լինէին: Քանզի մասանց
չարեաց պատճառ մարդն արարիչ,
անտի յայտ է թէ և բովանդակ
իսկ չարեացն արարիչ Աստուած է,
զոր ամենեւին մի՛ երբէք լիցի ասել՝
թէ Աստուած չարեաց պատճառ
իցէ, այլ այն որ իւրով կամօք ըղ-
գործ չարեացն գործիցէ. և յում-
մէ չարն գործի՝ յիրաւի նմին և ա-
նուն չարութեան դնի, որպէս և
յառաջագոյն իսկ ասացաք:

Ժ. ԵՒ արդ եկեսցուք յիրացն
իսկ 'ի քննին, զի յորժամ ճշգրիւ-
մրցութիւնք լինիցին՝ դիւրաւ ըղ-
յայտնութիւն ճառիցն յանդիման
կացուցանիցեն:

Արդ զԱստուած բարի՞ և բարերա՞ր ասիցեն ։ Հարկ է թէ բարի և բարերար ասեն , և չարութիւն ինչ ՚ի նա ոչ մերձենայ ։ Եւ եթէ այն այնպէս իցէ ։ Նախ զչնութենէ և զպոռնկութենէ հարցցուք , և ապա զայլոցն նոյնպիսեաց ։ Եթէ Աստուծոյ կամօք գործէին այնպիսի չարիք , ընդէ՞ր ՚ի գործելեաց չարեացն վրէժս պահանջէ . այլ այնու զի ըստ չարեաց գործոցն վրէժս պահանջիցէ՝ յայտ է եթէ ոչ ախորժէ զչարիսն , այլ ատեայ , և պատիժս պատուհասից ՚ի վերա գործելեացն ածէ . որոց , ըստ իւրեանց անմտութեան , խրատք նորա՝ չարութիւնք կարծին . որպէս և այժմ սպանողք յորժամ ՚ի պատիժս մտանեն՝ ոչ բարերարս ըզպատժածուսն կոչեն , այլ չարարարս . քանզի այնպիսի բարք են չարագործաց՝ զիրաւունսն անիրաւութիւն ասել ։ Բայց մեզ մի՛ լիցի այնպիսի ինչ ասել . այլ զչարիսն ոչ անձնաւորս կարծել , այլ կամածինս ։

Ապաքէն՝ պոռնկութիւն և շնութիւն՝ 'ի մերձենալոյ 'ի միմեանս առն և կնոջ լինին. եթէ յիւր կին ոք օրինօք ամուսնացեալ մերձենայցէ վասն որդէծնութեան և զաւակի սերելոյ, բարիոք է մերձաւորութիւնն. ապա եթէ ուրուք թողեալ զիւր կին, զայլոյ ամուսնութիւնն թշնամանիցէ, գործ չարութեան գործէ: Եւ թէպէտ մերձաւորութիւնն նոյն է, և օրինակ մերձաւորութեանն ոչ նոյնպիսի. քանզի միոյն բուն հայր լինի որդւոց, և միւսն գողունի: Նոյն բանք են և վասն պոռնկութեան. եթէ վասն որդէծնութեան ոք մերձենայցէ յիւր կին, յիրաւի է. ապա եթէ առ ցանկութեան օտար մարմնոց ցանկանայցէ, կարի իսկ անիրաւութիւն: Եւ յայտ է՝ թէ իրքն չարք յայնժամ լինին, յորժամ պէտքն օրինօք ոչ վճարեսցին:

Նա և զսպանութենէ նոյն բանք են. յորժամ զոմն բռնեալն 'ի շնութեան ոք սպանանիցէ, պատուհաս 'ի վերայ ածեալ վասն յանդգնու-

թեանն, չառնէ չար ինչ: Այլ ապա ե-
թէ զանմեղն ոք, որոյ ոչ ինչ 'ի
վճռականացն գործեալ իցէ՝ սպա-
նանիցէ, կամ վասն ինչս զերծա-
նելոյ, կամ վասն ստացուածս հա-
տանելոյ, չարութիւն գործէ. եւ
գործն նոյն է երկոցունց, բայց օ-
րինակն ոչ նոյնակիսի:

Նա եւ յինչս առնուլ նոյն բանք
են. որ պարգեւ 'ի տեառնէ կամ
ձիր 'ի բարեկամէ առնուցու, ոչ
ինչ չարութիւն գործէ. իսկ որ
բռնաբար յանաւագէն հանիցէ,
չարութիւն գործէ. եւ առնուլն
երկոցուն նոյն է, բայց օրինակ
առնլոյն ոչ նոյնակիսի:

Նոյնպէս եւ աստուածպաշտու-
թեան յօրինակէ անտի ցուցանի
չարութիւնն. եթէ զճշմարիտն Աս-
տուած ոք պաշտիցէ, գործ աղ-
նուական գործէ. ապա եթէ թո-
ղեալ զճշմարիտն, քարանց եւ փայ-
տից՝ որպէս թէ Աստուծոյ՝ պաշ-
տօն մատուցանիցէ, անհնարին վը-
նաս գործէ. զի զօրինակ պիտոյից
յանպատեհ իրս դարձոյց: Եթէ

պատուհեր որք գործիցէ, և ոչ վասն սի-
րոյ սիրելւոյն՝ որ մնաչուանք յաւիտենից
վրիժառնեցաւ, կամ վասն դժուարու-
թիւն ցուցանելոյ, այլ 'ի պատշ-
աճն տանել երկնիր պարգևանիցէ
իւր Աստուծոյ, գործ չարութեան
գործէ ։

Եւ այսպէս կազմածոյ խրատ ինչ
եւս՝ միայք գործոյն գործենն զչարին,
որպէս և երկաթ մերթ 'ի բարիս
պաշտի, և մերթ 'ի չար ․ զի եթէ
խոսի և գերանդի և մանգաղ որք
գործիցէ, 'ի բարութ իւր պաշտե-
ցաւ ․ ապա եթէ սուսեր և գեղ-
արդն և սլաք, և այլ ինչ զէն՝ որ
մեռաասակար մարդկան է, գործ չա-
րութեան գործէ ․ և պատճառ չա-
րութեանն գործելին, և ոչ եր-
կաթն ։

ԺԱ․ ԽՍԿ մարդիկ, ասեն, յան-
ձանց ինչ ունիցին զայնպիսի շարժ-
մունս, թէ յԱստուծոյ լեալ իցեն,
կամ թէ այլ որք իցէ՝ որ զայն 'ի
մարդիկ արկանիցէ ։

ՑԱստուծոյ մարդկան այսպիսի
ինչ լինել՝ չէթուի պատշաճ ասել,

այլ ուժնել անձնիշխանութիւն և
ազատութիւն առաւելոյ մարդոյն
եղելոյ յԱստուծոյ, և 'ի նմանէն
զնոյն իւրոց պաշտպանութեան ժառան-
գել: Եւ արդ առեալ զանձնիշխա-
նութիւնն, ում կամի՝ ծառայա-
նալ, որ մեծ շնորհն պարգևեալ
է նմա յԱստուծոյ. քանզի այլն ա-
մենայն 'ի հարկէ ծառայէ աստուա-
ծական հրամանին. եթէ զերկնից
ասիցես, կայ հաստատեալ, և ոչ
շարժի 'ի սահմանելոյ նմա անդուոյն.
և եթէ զարեգականէ կամիցիս ա-
սել, սակայն և նա կատարէ զդր-
ուցեալ նմա զշարժումն, և չէ-
նէ խոտորիլ յընթացիցն՝ այլ 'ի
հարկէ ծառայէ ստրունական հրա-
մանին: Նոյնպէս և զերկիր ասեղմա-
ցեալ անսասանելիք, և բարձեալ՝ բե-
րէ զհրամանն հրամանատուին. և
զայլսն ամենայն համակերպ ծա-
ռայացեալս հրամանաց արարչին,
և չէշխեն այլ ինչ քան զայն՝ յոր
կարգեցանն՝ գործել. մարդն որոյ
գովելեակ զնոսա՝ յաղագս զանհամանս
հրամանացն պահելոյ:

Բայց մարդոյ առեալ զանձնիշխանութիւն, ում կամի՝ ծառայանայ․ ոչ 'ի հարկէ բնութեան բռնադատեալ, ոչ 'ի զօրութենէն՝ որ նմա վասն լաւութեանց շնորհեցաւ՝ կասեալ, այլ 'ի հնազանդութենէ միայն շահի զօգուտն, և յանհնազանդութենէ զվնաս․ և զայն ոչ եթէ առ եղեռանէ ինչ լեալ ասեմք մարդոյն, այլ վասն լաւութեանց։ Զի եթէ իբրև զմի ինչ յայլոցն բնութեանց լեալ էր՝ զոր 'ի հարկէն ծառայեն Աստուծոյ, ապա և վարձս ընդ կամակարութեանն առնլոյ չէր արժանի, այլ իբրև գործի մի էր արարչին, զոր թէպէտ 'ի չար վարէր և թէպէտ 'ի բարի, ոչ պարսաւանք ինչ էին նմա և ոչ գովութիւնք, այլ պատճառ այն էր՝ որ զնա այնպէսն վարէր․ նա և ոչ զլաւ ինչ գիտէր այնուհետև մարդն, քանզի չէր հմուտ այլ իմիք, բայց այնմ եւեթ՝ յոր պատշաճեալն էր։ Այլ Աստուած այնպէս պատուել զմարդն կամեցաւ, զի առ լաւութեանցն

խելամտաւ լինելոյ՝ զանձնիշխանութիւնն պարգեւեաց նմա, որով կարող իցէ առնել զինչ և կամեսցի, և զանձնիշխանութիւնն նորա 'ի լաւն խրատէ գործածուցանել:

Որպէս հայր ոք յորժամ զորդի իւր խրատիցէ՝ որ կարող իցէ ուսումն ինչ ուսանել, չծուլանալ յուսմանէն՝ այլ յառաջադէմ լինել 'ի լաւն սովորել. վասն զի գիտէ՝ եթէ կարող է յառաջադէմ լինել, պահանջէ զուսումն՝ յոր աւանդեցաւ: Նոյնպէս և զԱստուծոյ պարտ է իմանալ՝ եթէ յօժարեցուցանէ զմարդն առնել հրամանաց նորա. բայց զկամակար իշխանութիւնն ոչ հանէ 'ի նմանէ, որով կարողն է առնել և չառնել հրամանացն. այլ խրատէ և յօժարեցուցանէ զմարդն, զի լաւութեանցն ցանկացող լիցի, որովք արժանաւոր մեծաց պարգեւաց լինիցի, եթէ անսայցէ Աստուծոյ. այլ զի և չանսալոյն իշխանութիւն ունիցի. քանզի ոչ եթէ վայրապար

ինչ կամէր Աստուած զայնպիսի պատրաստել տալ, որ յաւիտենական անեղծութիւնն է. զի վայրապար իսկ էր այնպիսոյն տալ՝ որ ոչ ունէր իշխանութիւն երկոցունց, անսալոյ այնմ՝ զոր Աստուածն կամէր, և չանսալոյ այնմ՝ զոր նոյն չախորժէր: Բայց իրաւամբք այն է, յորժամ արժանի ըստ որոց գործեացն ոք ինչ առնուցու:

Եւ արդ զիա՞րդ եղեւ էր ընտրութիւն գործոցն, եթէ ոչ ունէր մարդն իշխանութիւն երկոցունց, և անսալոյն և չանսալոյն: Եւ արդ յայտ է թէ անձնիշխան եղեւ մարդն՝ առնել զբարի և ժտել 'ի չարէ. իբր ոչ եթէ չար ինչ առաջի կայր՝ յոր ժտեսցի, այլ այն եւեթ առաջի կայր՝ կամ անսալ Աստուծոյ կամ չանսալ, և զնոյն եւեթ պատճառ չարին իմանալ: Քանզի լեալ մարդն առաջին՝ առնոյր պատուէր յԱստուծոյ, և չհնազանդեալ աստուածական հրամանին՝ մտանէր 'ի չարիս, և անտի լինէր ըն կիզքն չարեաց:

Ուստի ոչ ոք կարէ անհաստատ լինել*
և անձնատուր չարին ցուցանել. և
զարդարեալ ոչ յարտաքնոցն, այլ յան-
սաստութենէ զինեալ առանձնա-
նալին, և յուսով վարդապետակա-
թենէ զօրացեալ. զի ոչ եթէ այնպի-
սի լինէր հաստատեալ բնութեամբ
զմարդն ցուցանել կարէ ոք։ Եթէ
այնպիսի լինէր բնութիւն մարդոյն
առնեալ էր, ապա ոչ 'ի բնութենէ
արարածոյ և յաստուածեղէն գր-
րոց նմա վարդապետութիւն ըն-
ծայանայր. որպէս ասէ սուրբ առ-
ռաքելական բարբառն, եթէ 'ի
մանկութենէ մարդիկ 'ի խնամս չա-
րի միտեալ են. զի ցուցէ թէ որ
միտքն՝ կամօք միտի, և ոչ ուրուք
բնութեամբ։

Այդ անհաստատութիւնն եւեթ՝ որ
արարչի Աստուծոյ կամացն գոր-
ծիցի՝ պատճառ չարեաց իմանալի
է. և նմին զայլ ոք վարդապետ ծա-
ծուկ հաշուել, դրդիչ և ոչ բնա-
դատիչ, որ զմարդն 'ի լաւու-

* անսասանելի։

Թեանցն մերկանալ կամեցաւ։ Ապա եթէ զպատճառն եւս կամիցին խնդրել, զնախանձն՝ որ առ մարդն եղեւ՝ իմասցին զպատճառն։ Եւ եթէ զնախանձուէն եւս ճըշդիւք քննիցեն՝ թէ ուստի եղեւ, ասասցուք՝ եթէ յառաւելութենէ զմարդն պատուելոյ. քանզի միայն մարդ ըստ պատկերի եւ ըստ նմանութեան Աստուծոյ եղեւ։ Իսկ եթէ այնու զԱստուած պատճառ չարեաց կամիցին առնել, անկանին յիմաստամարար խորհրդոյ։ Եթէ զնորա ինչ համեմեալ էր, եւ մարդոյն շնորհեալ, թէպէտ եւ յիրաւի պատճառ չարեաց կարծէր առնիցէն. ապա եթէ զնա նոյնպէս որպէս եղեւն պատճառեաց, եւ զմարդն այսպէս կամեցաւ առնել, պատճառ չարեաց նախանձորդն է։ Քանզի ոչ եթէ յորժամ լիցին ուրուք երկու ծառայք, եւ զմինն 'ի ծառայութեան ունիցի, եւ զմիւսն յորդեգիրս դրեսցէ, եւ միոյն յարուցեալ 'ի վերայ զմիւսն սպանանիցէ, մի՛ թէ պատճառ չարեաց զտէրն պարտ է

ցէ իմանալ, որ ոչ եհան ինչ 'ի ծառայէն և շնորհեաց միւսոյն :

ԺԲ. ԱՐԴ և զայն ես հարցանեմ. եթէ չար ինչ չկայր առաջի, ուստի՞ օձն՝ զոր սատանայ կոչէք՝ իմացաւ զհանգամանս չարին :

Ասեմք, եթէ սատանայ չար զստուննգամնեն մարդոյն Աստուծոյ իմացաւ, վասն որոյ զմարդն յայն յօժարեցոյց : Որպէս յորժամ իցէ ոք ուրուք թշնամի, և թագուցեալ զթշնամութիւնն՝ դադր կամիցի մտանել, և չցուցիցէ զհանգամանս մտատակարութեանն, և շուրջ եկեալ յածիցի հնարս խնդրել. ապա գտեալ ժամանակ՝ յորժամ ոք 'ի բժշկաց թշնամւոյն նորա պատուէր տայցէ յայս ինչ չհալել, և յայս նիշ կերակրոց չճաշակել, որով առողջութեանն կարիցէ հասանել, և նորա լուեալ՝ վաղվաղակի 'ի կեղծիս բարեկամութեան կեղծաւորեալ՝ զբժիշկն պարսաւիցէ, և զօգտակարսն նմա մտատակարս թելադրեալ կարծեցուցանիցէ, և հակառակ պատուէրս հրամանաց

բժշկին տայցէ, և այնու առնիցէ նմա վնաս. որ ոչ եթէ յառաջագոյն գիտէր զհանգամանս վնասակարութեանն, այլ 'ի պատուիրելոյ բժշկին զատեալ հնարս՝ եղև վնասակար: Նոյնպէս կարծի և զատանայէ՝ նախանձելն նմա ընդ նախաստեղծ մարդոյն, և չգիտել զհանգամանս վնասակարութեանն. քանզի ոչ եթէ չար ինչ առաջի կայր՝ ուստի զհանգամանսն մարթ էր առնուլ. ուսեալ յԱստուծոյ պատուիրանէն՝ որ մարդոյն տուաւ արգելուլ զնա 'ի ճաշակելոյ 'ի տնկոյ իմէքէ 'ի մահաբերէ, զայն յառաջադրեաց մարդոյն. որ ոչ եթէ անպիտան ինչ 'ի կերակուրս մարդոյ էր, և ոչ բնութեամբ տունկն մահաբեր, և վասն այնորիկ ինչ արգելաւ մարդն 'ի ճաշակելոյ 'ի նմանէ, այլ անսաստութիւնն եղև պատճառ մահուան մարդոյն, իբրև յանցաւորի՝ որ անցանիցէ ըզհրամանաւ հրամանատուին՝ որ նմա կարգեալ իցէ:

Արդ ժտեցոյց Թշնամին զմարդն

անցանել զհրամանաւն Աստուծոյ, որպէս զի ոչ եթէ ստուգեալ գիտէր՝ եթէ այնու նմա վնաս ինչ գործել կարիցէ, այլ կարծեօք 'ի թեթուս մտացեալ, եթէ լիցի և թէ չլինիցի. և յետոյ յԱստուծոյ պատուհասէն՝ որ առ մարդն եղեւ վասն պատուիրանազանցութեանն՝ իմացաւ եթէ պատուիրանք Նորա մահ գործեցին, և յիրաւի պատժեցան և նա և մարդն՝ զոր յօժարեցոյց յանսաստութիւնն, ճաշակել 'ի փայտէն՝ որ ոչ բնութեամբ մահաբեր էր, այլ յԱստուծոյ սպառնալեացն եղեւ այնպիսի իրաց պատճառ:

Եւ որպէս բժշկի ոչ կարեմք մեղադիր լինել՝ վասն յառաջագոյնն զգուշացուցանելոյ որով օրինակաւ կարիցէ մարդն առողջանալ, և նորա թողեալ զպատուէրս բժշկին՝ անսայցէ թշնամոյն՝ որ զվնասարար խրատն տայցէ նմա, որով ոչ ըղպատճառս վնասուն 'ի բժշկէն՝ որ յառաջագոյնն զգուշակեաց նմա՝ և մահապարտ է, այլ 'ի թշնամւոյն որ 'ի

պատուիրանէ բժշկին նման զփտեալն հնարեցաւ. Նոյնպէս և զսատանայէ ասեմք լեալ Թշնամի մարդկան՝ որ չեւ ևս գիտէր զհանգամանս չարեաց, այլ 'ի պատուիրանէն Աստուծոյ ուսեալ՝ կամեցաւ վնասել մարդոյն. որպէս զի եթէ առանց Աստուծոյ կամաց 'ի ծառոյն ճաշակիցէ՝ առնուցու պատիժ զմահ: Քանզի եթէ յառաջագոյն չէր զգուշակեալ Աստուծոյ մարդոյն չուտել 'ի կերակրոյ ծառոյն, և նորա յանդգնեալ կերեալ, չլինէր նմա պատիժ մահ. կամ որպէս թէ առ 'ի չգիտանս եկեր, կամ թէ առ չժուժալոյ 'ի կերակրոյ ծառոյն, չէր ինչ պատժի պարտական: Քանզի և մանուկ կաթնակեր՝ որ յայլ ինչ կերակուր մատչիցէ, ոչ պատժելի է՝ այլ արգահատելի, որպէս թէ առ 'ի չգոյէ կաթին յայն յօժարեաց: Նա և օձն, որ է սատանայ, յիրաւի պատժեցաւ՝ վասն ընդ անագորոն թշնամութեան ընդ մարդոյն ունելոյ:

Եւ արդ սկիզբն չարեաց զնա-

խանձն ասեմք, և զնախանձն յառաւել զմարդն պատուելոյ, և զչարիսն յանհնազանդութենէն։ Զի Աստուած այնպէս առաւել զմարդըն պատուեաց, և նորա անսաստեալ` զընկէց զպատուիրանն։ Ուստի զամենայն ինչ որ լինի չար, ոչ բնութեամբ չար գիտեմք, այլ զի առանց կամացն Աստուծոյ գործին իրք ինչ` լինին չար։

Նա և ընդ լինելն իսկ սատանայի յԱստուծոյ, գիտաց` եթէ անսաստել ումեք Աստուծոյ` չար է և ոչ բարի. քանզի ոչ եթէ անմիտ ինչ ոք եղեւ նա յԱստուծոյ` եթէ չգիտէր, եթէ որ ինչ.ըստ Աստուծոյ կամացն լինի` բարի է, և որ ինչ արտաքոյ քան զնորա կամսն` այն չար է. և վասն այնորիկ յիրաւի տանջէ զնա Աստուած, զի գիտէ նա զբարին, և ոչ առնէ. և հմուտ է չարին, և ոչ խորշի։ Եւ ոչ չար և չարչարիչ հաստատեաց զնա Աստուած. և ոչ փորձիչ` եթէ նովաւ փորձեալ զարդարս զտեսցէ. և ոչ ինքն յանձնէ չար

զանեալ, և ոչ անարգար և հակառակ Աստուծոյ. այլ մտաւոր եղեալ յԱստուծոյ, և հմուտ գիտութեան՝ թէ չար է հակառակ կալ Աստուծոյ հրամանին, և յայն զոր գիտէրն՝ թէ չար է՝ յանդգնեցաւ, զանսաստութենէն առեմք. և անսաստութիւնն ոչ եթէ անձնաւոր ինչ յառաջագիտ էհաս 'ի գիտութիւնն սատանայի, այլ իբրեւ զմի ինչ եղեալ 'ի դիպաց կամեցելոյն։

Նա և զմարդոյ յիրաւի, առեմք, կրել պատուհաս ընդ որոց գործիցէ. քանզի կամաւ երթայ յուսումն այնպիսի իրաց, յորոց յորժամ և կամիցի՝ և մեկնել կարող է. քանզի և կամելոյն և չկամելոյն ունի իշխանութիւն, զորոյ զհետ երթայ և կարելն զոր ինչ կամիցի առնել։

ԺԳ. ՈՐՈՎՀԵՏԵՒ, առեն, չարեաց արարիչ զԱստուած չկամիք ասել, այլ 'ի մարդկանէ եղեալ թելադրութեամբ սատանայի 'ի հնազանդելոցն նորա և 'ի խաբեցելոց, և յիրաւի կրեն պատիժս. զի կարէին հաստատանել և ընկենուլ 'ի

բայց զչարիսն, և ոչ կամեցան, և արդ վասն նորին իսկ սատանայի հարցցուք․ այնպիսի՞ արդեւք արար զնա Աստուած, եթէ ինքնին այնպիսի չէր՝ և յօժարեաց ՚ի չարաբարել։

Եթէ այնպիսի արարեալ էր զնա Աստուծոյ, պատիժս ՚ինմանէ չէր պարտ պահանջել, զի պահեաց զպայման բնութեանն՝ յոր արարին զնա Աստուած․ և որ ոք ոչ կամօք ինչ գործէ, ընդ այնր պատիժ չըպարտի կրել․ բայց որ կամօք կարօղ է գործել, և գործ ինչ յոռութեան գործիցէ, յիրաւի պատժի, զի ոչ եկաց յայնմ՝ զոր Աստուածն կամի․ ապա եթէ յԱստուծոյ բարւոք եղեւ, և անձամբ յանձնէ դարձոյց զկամսն ՚ի չար՝ հեռացուցեալ զինքն ՚ի լաւէն, յիրաւի պահանջի ընդ որոց յանդգնեցաւն՝ պատիժս․ զի զսատանայ մեք ոչ յԱստուծոյ սատանայ եղեալ գիտեմք․ այլ զսատան անունն՝ վասն խոտորելոյն էառ իւր անուն․ քանզի սատանայ յեբրայեցւոց և յԱսորւոց

լեզու է խոստովանեալ թարգմանին. այլ զօրութիւն իմն զգայուն լաւութեանց հաստատեցաւ յԱստուծոյ, և 'ի թշնամութենէ ընդ մարդոյն ունելոյ՝ իւրն կամօք եղեւ բանսարկու. Թողեալ զԱստուծոյ հպատակութիւն՝ սկսաւ անսաստել, և հակառակ կալ Աստուծոյ հրամանացն ուսուցանել մարդկան, և իրրեւ զապստամբ յետս կացեալ Թիւրեցաւ յԱստուծոյ։ Եւ վկայէ բանիս առաքելական բարբառն, որ ապստամբ վիշապն կոչէ զնա՝ եթէ հրամանաւ սորան զապստամբ վիշապին։ Եւ արդարեւ իսկ բանն Աստուած սորան զսատանայ, այնուզի կոխելոյն զնա եւ իշխանութիւն։ Արդ ապստամբ կոչէ զնա գիր. և թէ նոյնպիսի՝ որպէս եղեւն յԱստուծոյ՝ կացեալ էր, ապա ոչ ապստամբ կոչէր զնա. զի որ ապստամբեալ ոք, Թողու զիւր սկզբանն՝ որով ոչ անապրաք իսկ յուսացանի։ Զի եթէ անապրար էր, ապա ոչ յիւրմէն բնութենէն փոխեր. քանզի չմարթի բնութեան իմիք՝ առանց

կամաց՝ մերթ բարձր լինել, մերթ ցածր :

ԺԴ. ԻՍԿ արդ եթէ ոչ էր անտրատ, տանէն, ըստ ձեզ աստուածոյ, և ոչ այնպիսի եղեալ յԱստուծոյ, և անձամբ զանձն դարձոյց 'ի լաւէ անտի 'ի յոռին, որ է 'ի հնազանդութենէ յանհնազանդութիւն, արդ զայն ասացէք . գիտէ՞ր Աստուած՝ եթէ այնպէս լինելոց էր, եթէ չգիտէր . թէ գիտէր և արար, ինքն է պատճառ՝ նորա 'ի լաւութեանցն դառնալոյ . ապա եթէ ոչ գիտէր, զիա՞րդ ասէիր զայն զոր ոչն գիտէր՝ թէ որպիսի ինչ ոք լինելոց իցէ :

Անգիտութիւն կարծել զԱստուծոյ՝ անհնարին յիմարութիւն է . քանզի միայն ինքն կանխագէտ է հանդերձելոց : Այլ քանզի բարերար էութիւն է Աստուած, ոչ կամեցաւ զազնուականութիւնն իւր ծածկել . վասն որոյ յառաջագոյն գիտէր զապառնայն՝ եթէ թիւրելոց է, և զմարդիկ յանցուցանելոց՝ առ 'ի չունկնդիր լինելոյ

հրամանաց նորա, որով միանգամայն վասն անձնիշխանութեան մարդոյն երեւելւոյ արար զնա Աստուած. զի առաւելութիւն բարերարութեան նորա յայտնի լիցի մարդկան, վասն թողութեան տալոյ մարդկան յառաջագոյն գործելոցն մեղաց: Զի յորժամ զսատանայ ամպարշտացեալ տեսանիցեն եւ չբարձեալ 'ի միջոյ, եւ վասն իւրեանց մեղացն խնամայցեն՝ թէ գոյ հնար թողութեան ապաշխարութեամբ. զի Աստուծոյ բարերարութիւնն ցուցանիցի, եւ մարդիկ զշնորհն նորա գիտասցեն. զի եթէ այն այնպէս չէր լեալ, եւ ոչ բարերարութեանն նորա ոք խելամուտ լինէր:

Նա բնաւ իսկ, ասեն, յետ թիւրելոյն սատանայի եւ խաբելոյ զմարդն՝ ընդէ՞ր իսկ ոչ եբարձ 'ի միջոյ, զի մի՛ զբազումս սպանանիցէ:

Ոչ եթէ չէր կարող Աստուած բառնալ զսատանայ 'ի միջոյ, քանզի չիք ամենեւին տկարութիւն զԱստուծով. այլ զի չէր ինչ մեծ

գործ Աստուծոյ զսատանայ ինքնին անձամբ սպանանել, և զարարած մի զեւր փոքր յոչինչ դարձուցանել, զի մի կարծիցի՝ թէ վասն չժուժալոյ չարութեանն նորա սպան զնա ։ Երկրորդ անգամ՝ զի անծանօթ եալ լինէր առ յապայ մարդկան Աստուծոյ բարերարութիւնն, թէ յառաջագոյն սպանանէր զսատանայ. զի ոչ ոք ունէր նշանակ ինչ յայտնի բարերար կոչելոյ զԱստուած ։ Այլ թերեւս և կարծէք ինչ 'ի մէջ մտանէին՝ թէ հաւասար ինչ ոք էր նա Աստուծոյ, և աճապարեաց 'ի միջոյ եբարձ. վասն որոյ պահեաց զնա, և ոչ կորոյս 'ի միջոյ, զի մարդիկ յորժամ լաւութեանցն հմուտ լինիցին, յաղթեսցեն նմա՝ փոխանակ այնոցիկ՝ որք յառաջնումն յաղթեցան 'ի նմանէ ։

Այն իսկ մեծ և զարմանալի է, զի մարդն Աստուծոյ՝ փառաւոր Աստուծոյ օգնականութեամբն, պատերազմեալ յաղթիցէ սատանայի ։ Որպէս մարտուցս ոք ամենայն հնարիւք հնարեալ զեւր աշակերտս

ղոն թէքէլ, առ 'ի ցուցանելոյ ըն-
հանգամանս մարդոցն, որով մար-
թիցեն յաղթել ախոյանից, և ա-
ռաքիցէ զնոսա 'ի հրահանգս մրցել
ընդ ախոյանսն, և յաղթութեանցն
ուշ առնել խրատիցէ, մինչև ըն-
կեանս անդամ արհամարհել. զի
լաւ համարի թէ վասն անուան բա-
րւոք մեռանիցին, քան թէ կենդա-
նի կայցեն և վատանուն լինիցին։
Եւ նոցա զթելադրութիւնս վար-
դապետին 'ի մտի եդեալ, և զպար-
գևս ընդ յաղթութեանն, զեր 'ի
վերոյ լինիցին ախոյանին, և պսա-
կեալ առ վարդապետին հասանի-
ցեն, և նշանակ ձգնութեան ընդ ա-
խոյանին՝ առ նա զպսակն բերիցեն։
Ապա եթէ զմարտուսոյցն զմտաւ
ոչ ածիցեն, և յաղթութեան և
պսակի ոչ ցանկանայցեն, կործա-
նին վատանուն յախոյանէ անտի.
յորում այնուհետև թշնամանին
և տանջին, և մահու պատիժ փո-
խանակ ընդ վատութեանն կրեն։
Նոյնպէս և զԱստուծոյ իմանա-
լի է, թէ իւրովք պատուիրանօք

վասն զ՚երկեցին զմարդիկն՝ առ 'ի պար-
տակելոյ զյաղթօղն, և յամօթ ա-
ռնելոյ զվատացեալն. Իսկ եթէ որ
յոչինչ զԱստուծոյ զպատուիրան-
սն համարիցի, յորժամ մրցել ընդ
բանսարկուին մարտնչիցի՝ վաղվա-
ղակի կործանի, քանզի չունի զնշա-
նակս յաղթութեանն. և յիրաւի
կրէ սաստիկ պատուհասից այնպի-
սին, զի ոչ նմանեաց ընկերին՝ որ
կռուեցաւ և յաղթեաց:

Արդ վասն այնորիկ թողեալ է
Աստուծոյ զսատանայ իբրեւ 'ի հրա-
հանգս կռուանոցաց յաշխարհի,
զի յորժամ իւր նախահատակեալքն
կռուիցին և յաղթիցեն նմա՝ պար-
ծանք առաքինոյ յաղթութեանն նո-
րա քակեսցին յայժմուն յայնմի-
նեացն մարդկանէ, որ լաւութեան-
ցըն ցանկութեամբ պարտիցեն զնա,
և նշան յաղթութեան զնահատա-
կութեանն կանգնիցեն: Քանզի կո-
խան արկեալ ընդ ոտիւք մերովք՝
անկեալ դնի մեռեալ, և կործանի՝
առ 'ի լաւութեանցն ցանկութեան
մերոյ 'ի պարտութիւն մատնեալ:

ԺԵ. ԱՐԴ յետ այսր ամենայնի հաւանութեանց՝ յամառեալ զնոյն 'ի մէջ բերեն. բնութեամբ են՝ ասեն՝ չարիք, և ոչ կամածինք:

Ասեմք. եթէ բնութեամբ իցեն, ընդէ՞ր օրէնք 'ի թագաւորաց դնիցին, և սաստք 'ի իշխանաց, և պատիժք 'ի դատաւորաց. ո՞չ ապաքէն վասն կործանելոյ չարեացն: Եւս, թէ բնութեամբ իցեն չարիքն՝ ոչ պարտի օրէնսգիրն օրէնս դնել, և ոչ իշխանին պատիժս 'ի վերայ չարագործին ածել: Ընդէ՞ր պատժիցեն զայն՝ որ ոչ կամօքն չար իցէ, որում արգահատելն պարտ էր, և ոչ պատիժս 'ի վերայ հասուցանել:

Եւ արդ այնպիսոյն եթէ կին չնայցէ, չպարտի մեղադիր լինել. քանզի ոչ կամաւ՝ որպէս ասենն՝ յօժարեցաւ 'ի չարն, այլ բնութեանն բռնադատեցաւ: Եւ եթէ որդւոյ իւրոյ սուր առեալ՝ 'ի վերայ խաղայցէ, մի՛ լիցի նմա մեղադիր. զի ոչ իւր կամաւ երթայ, այլ չարին տանի զնա յայն: Եւ եթէ

'ի դղրտացւոյ և 'ի բարեկամէ Թշնամանեացի՝ մի՛ փոխարէն Թշնամանեսցէ, այլ առաւել արգահատեսցէ եւս . զի ոչ եթէ նա ինչ Թշնամանէ, այլ չարն՝ որ բռնաբար վարէ զնա : Նոյնպէս՝ յորժամ դատաւոր զմայր անարգիցէ, և նու զկեսուր իւր, և կին զայր, և ծառայ զտէր, և եղբայր զեղբայր, մի՛ ինչ տարցին ընդ միտ՝ որք անարգեցանն, այլ արգահատեսցեն նոցա որպէս 'ի չարէն բռնադատելոց :

Իսկ եթէ տեսանեմք՝ Թէ Թագաւորն զիւրոց օրինաց վրէժս պահանջէ, և պահանջմամբ վրիժուցն զվնասն կարճէ, և դատաւորն ըզգողն և զաւազակն արկէ և քերէ՝ վասն զվնասակարութիւնն 'ի միջոյ բառնալոյ, և հայր զորդի դժնեայ մահապարտեալ՝ դատաւորաց մատնէ, և այլքն ամենեքեան զիւրաքանչիւր զանցնիւր զանարգանաց վրէժս պահանջեն՝ կամ անձամբ կամ իշխանօք, յայտ է Թէ չարեացն որք գործին՝ կամածինք են և ոչ բնականք : Բայց աղէ՝ դու ըղ-

կարծին իսկ զոր շռայլեալ ցանկու–
թեամբք՝ ապրկեա և մարմնակեա, տես
թէ ընդու ամենեւին զտանիցի 'ի
Նմա յիշատակ ցանկութեանն : Եւ
արդարեւ ոչ ինչ ընդ վայր առա–
ցեալ է բանն իմաստնոյն, թէ ծա–
ռայ որ ընդ ունկն ոչ լսէ՝ ընդ մկա–
նունս տան լսել Նմա :

Նա և յայլուստ եւս մարթեմք
իմանալ, զի մարդոյ բնութիւն բա–
րեաց ցանկացող է, և ոչ չարեաց :
Զի շունն, որ շնայ, մինչ դեռ իսկ
'ի գործ շնութեանն իցէ՝ եթէ ոք
շուն կոչէ զնա, ընդդիմանայ. պոռ–
նիկն, որ յայտնի պոռնկի, զանուն
պոռնկութեանն չախորժէ լսել.
նոյնպէս և գողն և աւազակն, և
այլ եւս չարագործքն, թէպէս և
զգործ չարագործութեան գործեն՝
զանուն չարագործութեանն յան–
ձն ոչ կամին առնուլ : Նա և կեղ–
ծաւորն կեղծաւորեալ, որ մեղմե–
խանօք ընկերին կամիցի վնաս առ–
նել, թաքուցանէ զկեղծաւորու–
թիւնն, և որպէս թէ բարւոյ ինչ
խրատ տայցէ՝ հրապուրեալ արկա

նէ ընդ միաւորիւք զանձամբն . և եթէ ոչ զբարւոյ զդէմս զգեցեալ մեզմեզիցէ , չկարէ ըստերիւրել յիրաւանց զիրաւապէտն :

Նա և յորժամ զխիստ ոք իշխան կամիցի 'ի քաղցրութիւն ածել , չըկարէ յայս երթալ ասել՝ թէ դու խիստ ես , այլ քաղցրախօսն բանիւք մատուցեալ ողջէ՝ թէ դու , տէր , քաղցր ես և բարերար ամենեցուն , ամենեքին գոհ են զքէն , բոլորք առ իրաւապէտս ունին . և այնպէս կարէ մեղմով քաղցրացուցանել զխստութիւն իշխանին , և խոնարհեցուցանել ածել յիրաւն և յարժան : Նոյնպէս և առ ցասուցեալն և տրտմեալն և առ նախանձոտն քաղցրութեամբ ոք մատչի և ցածուցանէ . և անտի յայտ է՝ թէ բարեաց ցանկացող է բնութիւն մարդկան , և ոչ չարեաց :

Եւ եթէ գազանացն գազանութիւն չար ինչ բնութեամբ կարծեցուցանիցէ նոցա , զխոստացեն՝ զի կէսքն յանասնոցն 'ի պէտս արարան , որպէս և արջառ և ոչխար և

ամենայն ինչ որ ուտելի է և կրելի է. և կեսքն վասն երկիւղ 'ի միամարդկան ծնուցանելոյ ։ Զի թէ զազանք ահագինք են, և միշտայք և օձք և այլ ճճիք մլաստակարք , և մարդն այնչափ հպարտացեալ է՝ մինչ ըստ Աստուծոյ երկիւղին սահմանս արտաքոյ ելեալ անսաստէ , եթէ այնպիսի զարհուրեցուցիչք չէին՝ որչափ եւս առաւել չկայրերքէք յակատանի ։

Նա և նոքին իսկ, որ չարքն կարծին անմնաց, երբեմն երբեմն օգտակարք լինին և զերծուցիչք 'ի մահուանէ ։ Զինչ չար քան զօձ կայյէ, և ինմանէ թերիակէ. և 'ի սպանող դեղոց , որք 'ի ննեգութենէ մարդկան կազմեցան , չեւ հասուցեալ և անդէն բուժէ ։ Եթէ բնութեամբ չար ինչ էր օձ , կամ չարի իրիք արարած , ապա չգտանէր ինչ ամենեւին 'ի նմա օգտակար , և ոչ զգօնանայր երբեք 'ի զազանութենէ անտի իւրմէ. Նա առանիկ տեսանեմք 'ի հնարագիտութենէ թովչաց զգօնացեալ , Ք իբրեւ զչուան

խաղաղէին ը՚նոցա, և բազում ան-
դամ բնակեալ ՚ի տան՝ չմեղանչէին
բնակչացն ։

Եւ արդ եթէ հեթանոս իցէ՝
որ չար ինչ բնութեամբ կարծիցէ,
յանգիտմանեացի յիւրոց արուես-
տակցացն օձապաշտացն. որ այն-
չափ զգօնացուցանել զօձս գիտեն,
մինչև կոչել յուռթիւք ՚ի տունս,
և կերակուրս մատուցանել, որպէս
բաբելացիքն վիշապին՝ զոր պաշտէ-
ին. և սպան զնա Աստուծոյ սիրե-
լին՝ նովին ընտելական կերակրովն ։

Եւ եթէ մոգ իցէ, և չարի արա-
րած զգազանսն վասն գազանու-
թեանն ասիցէ, ՚ի հասարակաց մը-
տաց փոշանման կրեալ ըմբերանեա-
ցի ։ Զի եթէ գազանքն չարի արա-
րածք իցեն, և երկիր բարւոյ, զի-
արդ բարւոյն արարած չարին արա-
րածոց դայեակ մնեալ՝ սնուցիչ լի-
նիցի, որք ՚ի նմանէ կերակրին և ՚ի
ծոց նորա հանգչին. զի երկու հա-
կառակքն իրերաց՝ միմեանց ծախիչք
են, որպէս խաւարի լոյս, և չէր
ստուամանեաց ։

